Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 1-2 (21)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ



№ 1-2 (21)



«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1945

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ, ՍՏԱԼԻՆԻ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹՅԱՄԲ

## ԸՆԿ. Գ. Ֆ. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎԻ ԶԵԿՈՒՅՑՈՒՄԸ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 21-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ-ՍԳՈ ՆԻՍՏՈՒՄ, 1945 ԹՎԻ ՀՈՒՆՎԱՐԻ 21-ԻՆ

*Ընկերնե՛ր։ Ահա արդեն 21 տարի պայքարում ու հաղթանակում է մեր պանծալի պարտիան՝ իր հիմնադրի՝ մեծ Լենինի մահվանից հետո։ Եթե մարդկանց վերաբերմամբ իրավացի է դատել նրանց գործունեության արդյունքներով, ապա դա առավել ևս ճիշտ է պարտիաների, պետությունների և ժողովուրդների վերաբերմամբ։ Խորաթափանց Լենինը կհպարտանար մարդկանց սովետական այն սերըն-*

դով, որը հետևելով նրա ուսմունքին, ընկեր Ստալինի ղեկավարությամբ կառուցել է սոցիալիստական հասարակություն, ամրապնդել սովետական պետությունը, ստեղծել ամենաուժեղ բանակը և ֆաշիստական զավթիչների դեմ մղվող կենաց և մահու պայքարում պաշտպանել իր նվիրական-հարազատ, լենինյան-ստալինյան գործը։

## 1։ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԸ ՊԱՏՎՈՎ Է ԿԱՏԱՐՈՒՄ ԻՐ ՊԱՐՏՔԸ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԱՆԴԵՊ

Հայրենական պատերազմի անցած տարին բերեց Կարմիր Բանակին վճռական հաղթանակներ, որոնց շնորհիվ ատելի թշնամին դուրս շպրտվեց սովետական հողից։ Մեր զորքերի ազատագրական վեհ միսիան ծավալվեց լրիվ չափով։ Այդ տարին նոր ապացույց բերեց լենինյան կանխատեսությունների։ «Եթե մեր խաղաղ աշխատանքին,— գրում էր Լենինը,— շարունակեն խանգարել, ապա մենք ոտքի կելնենք համաժողովրդական պատերազմի, և ավանտյուրային ու բանդիտիզմին մասնակցողները կճզմվեն մինչև վերջը»։



Եղավ այնպես, ինչպես այդ նախատեսել էր Լենինը։

Ժամանակակիցների ընդհանուր պրոգրեսիվ գործի մեջ ներդրած իր ավանդով հպարտ, բոլշևիկների պարտիայի անմահ գաղափարներով ոգեշնչված մեր ժողովուրդը քաղեց աշխատանքի և մարտի դաշտում իր գործադրած դյուցազնական ջանքերի արժանավոր պտուղները։

Սովետական պետությունը պատերազմի ընթացքում ծավալեց իր հզորությունը, իսկ Կարմիր Բանակը ուժի և ռազմական վարպետության տեսակետից շատ գերազանցելով թշնամու բանակին, լենինյան ձևով, ստալինյան ձևով մահացու հարվածներ հասցրեց ատելի թշնամուն։ Ֆաշիստական բանակները անցած տարի հետևողականորեն ջախջախվեցին սովետա-գերմանական ամբողջ ռազմաճակատում։ Կարմիր Բանակը վարպետորեն շահեց Ղրիմի, Մերձբալթիկայի, Բելոռուսիայի, Մոլդավիայի համար մղված պատմական ճակատամարտերը։ Սովետական հողում գերմանացիների վերջին պլանը՝ գերմանական զինվորների միլիոնավոր կյանքերի գնով պահպանել սովետական

գավթված տերիտորիաները,— խորտակվեց: Կարմիր Բանակի և սովետական ժողովրդի առաջ ընկեր Ստալինի դրած Հայրենական պատերազմի առաջին նպատակը՝ «Մեր տերիտորիաները և մեր ժողովուրդներին ազատագրել գերմանա-ֆաշիստական լծից»՝ իրականացված է:

Դրա հետ միասին սովետական զորքերը շատ առաջ են անցել դեպի արևմուտք և ռազմական անօրինակ արշավներ են կատարել՝ գերմանացիներին վռնդելով Գերմանիայի կողմից օկուպացված եվրոպական երկրներից:

Մեր զորքերն ազատագրել են Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի տերիտորիայի մեծ մասը՝ նրա բազմամիլիոն բնակիչներով:

Անցած տարում մեր հերոսական Կարմիր Բանակը Սովետական Միության սահմաններից դուրս գերմանացիներին վռնդել է ավելի քան մեկ միլիոն քառակուսի կիլոմետր եվրոպական տերիտորիայից, որի վրա ապրում է Կարմիր Բանակի կողմից գերմանական լծից փրկված ավելի քան 50 միլիոն բնակիչ: Այժմ սովետական զորքերը իրենց ոխերիմ թշնամիներին հարվածում են Եվրոպայի տերիտորիայում, սովետա-



կան սահմաններից 300, 400 և նույնիսկ 800 կիլոմետր հեռավորության վրա:

Այժմ Կարմիր Բանակը մեզ դաշնակից Լեհաստանի ու Չեխոսլովակիայի դաշտերում ծավալել է սրընթաց հարձակում, արագ և աչքի ընկնող վարպետությամբ խորտակել գերմանական շատ հզոր պաշտպանությունը, արդեն գրավել Կելցե, Ռադոմ, Վարշավա, Չենստոխովա, Պշասնիշ, Մոդլին, Լովիչ, Սոխաչև, Սկերնեվիցե, Պիոտրկով, Կրակով, Լոձ, Յասլո, Գորլիցե, Մլավա, Զյալդովո, Կուտնո, Տոմաշով, Կոշիցե, Պրեշով, Վլոցլավեկ, Պաբյանիցե և շատ այլ քաղաքներ ու հաջողությամբ առաջ է շարժվում դեպի արևմուտք:

Այդ նշանակում է, որ Կարմիր Բանակը հաջողությամբ է իրականացնում իր ազատագրական մեծ միսիան:

Կարմիր Բանակը հիտլերյան աղտեղությունը իսպառ ոչնչացնում է նաև Գերմանիայի տերիտորիայում: Տարակույս չկա, որ ֆաշիստական Գերմանիայի տերիտորիայում գերմանական զորքերին ջախջախելու համար մղվող պատերազմական գործողությունները կլինեն առանձնապես կատաղի ու համառ: Միավորված Ազգերի բանակները հարկադրված կլինեն հաղթահա-

բելու ֆաշիստական չարագործների կատաղի դիմադրությունը։ Հիտլերականները դեռևս ուժ ունեն և կռվելու են համառ կերպով։ Բայց եթե թշնամին երեկ ավելի ուժեղ էր, քան այսօր, ապա մենք այսօր շատ ավելի ուժեղ ենք, քան երեկ։

Նապոլեոնյան արշավանքների ժամանակներից ի վեր գերմանացիները «յուրաքանչյուր 20—30 տարին մեկ Եվրոպայի ժողովուրդների վզին փաթաթում էին արյունահեղ, ավերիչ պատերազմներ։ Սակայն այդ ժամանակամիջոցում պատերազմական գործողությունները ոչ մի անգամ չեն մղվել գերմանական հողում, և գերմանացիները ըստ էության լիովին չեն կրել այն տառապանքներն ու աղետները, որ պատերազմը բերում էր մյուս ժողովուրդներին։ Այժմ գերմանացիները բոլոր ուժերը լարում են, որպեսզի դաշնակից բանակներին կանգնեցնեն Գերմանիայի սահմաններում։ Սակայն դա հիտլերականներին չի փրկի կատաստրոֆից։ Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձի մասին ասված իր զեկուցման մեջ ընկեր Ստալինը ասաց, որ «Միավորված Ազգերը կանգնած են հիտլերյան Գերմանիայի դեմ



մղվող պատերազմի հաղթական ավարտման շեմքին։

Գերմանիայի դեմ մղվող պատերազմը Միավորված Ազգերը կշահեն, այդ մասին այժմ արդեն չի կարող ոչ մի տարակույս լինել» («Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի մասին», էջ 151)։ Կարմիր Բանակը լի է վճռականությամբ՝ ավարտել պատերազմը հաղթականորեն մտնելով Բեռլին։ Ընկեր Ստալինը ասում էր, որ մեր բանակը իր ուժով, փորձով և ռազմական արվեստով գերազանցել է թշնամու բանակից։ Գերմանական բանակն ուներ մեծ տրադիցիաներ, ռազմական հիմնավոր փորձ, սպայական բազմաքանակ կադրային կորպուս, հին, կոփված գեներալիտետ։ Կարմիր Բանակը պատերազմի սկզբում չուներ ժամանակակից պատերազմ վարելու այդպիսի մեծ փորձ։ Սակայն Կարմիր Բանակն ունի այնպիսի հատկություն, որը չունի և չի կարող ունենալ ուրիշ որևէ բանակ։ Կարմիր Բանակը կազմված է սոցիալիստական երկրի կողմից սովետական աշխարհայացքի առաջավոր գաղափարներով դաստիարակված մարդկանցից, նոր կյանքի շինարարության փորձը յուրացրած և դժվարություն-

ները համարձակորեն հաղթահարելու ընդունակ մարդկանցից։ Սովետական ռազմիկները առաջավոր մարդիկ են, որոնք դեռ երեկ աշխատում էին ֆաբրիկաներում, գործարաններում, կոլխոզներում, ինստիտուտներում։ Բոլշևիկների պարտիան նրանց դաստիարակել է որպես համարձակ նովատորներ, նոր աշխարհի կառուցողներ, որոնք ընդունակ են և վառվում են անընդհատ ու արագ առաջ գնալու ցանկությամբ՝ ջախջախելով բոլոր խոչընդոտները, որոնք վախ չգիտեն մեր Հայրենիքի թշնամիների դեմ մղվող պայքարում։ Պարտիան դաստիարակել է այնպիսի մարդկանց, որոնց համար թիկունքում և պատերազմում չկա ոչ մի անհնարին և անհաղթահարելի բան։ Ինչպես խաղաղ ժամանակ պարտիան ժողովրդի մեջ զարթեցրեց ստեղծագործության ոգին, սովետական մարդկանց բարձրացրեց սոցիալիստական շինարարության, այնպես էլ պատերազմի տարիներին պարտիան ժողովրդին բարձրացրեց տիրապետելու ռազմական փորձը, ժամանակակից ռազմական առաջավոր արվեստը, սովետական ռազմիկներին առաջնորդեց ջախջախելու գերմանա-ֆաշիստական զավթիչներին։ Հենց դրանով է բացատրվում, թե



ինչու Կարմիր Բանակը կարճ ժամկետում իր ուժով ու զինվորական արվեստով գերազանցեց իր թշնամուն։

Որքան էլ այդ տարօրինակ թվա, բայց անցած տարի սովետական զորքերից գերմանական բանակի կրած խոշորագույն պարտությունները հիտլերյան ավազակային շայկայի պարագլուխների կողմից գնահատվում է որպես ֆաշիստական քաղաքականության և գերմանական ռազմական արվեստի բարձրագույն «նվաճումներից» մեկը։

Ֆաշիստական տխրահռչակ տեսաբան գեներալ Դիտմարը վերջերս նշում էր, որ գերմանացիները «1944 թվի նվաճումների» շնորհիվ հասան «չտեսնված բարձրության»։ Ֆաշիստական պարագլուխներից մեկը Հիտլերի հանձնարարությամբ հանդես գալով նոր տարվա ճառով, ասաց, որ գերմանացիները «հաղթահարեցին հին տարին և ճիշտ այդպես էլ գլուխ կհանեն նոր տարին»։ Հարկ չկա ասելու, որ եթե գերմանացիները այնպես «գլուխ հանեն» նոր տարին, ինչպես նրանք սկսեցին այդ անել այս տարվա հունվարին, ապա հիտլերյան պետությունը և բանակը արդեն շուտով կանհետանան։ Միավորված Ազգերի հաղ-

թանակը կլինի կատարված փաստ, իսկ Գերմանիայում՝ ներկայումս իշխող կլիկը կնստի քրեական և պատերազմական հանցագործների նստարանի վրա։

Անցած տարին հակառակորդի հիմնական զինված ուժերը ջախջախելու վերաբերյալ Կարմիր Բանակի Գերագույն Գլխավոր Հրամանատարության ամենախոր և համարձակ մտադրությունների լիակատար հաղթանակի տարի էր։ Հաղթեց մեր պետության զինված ուժերի սովետական, լենինյան-ստալինյան կազմակերպությունը։

Մեր ռազմաճակատների գործողությունները, Սառուցյալ օվկիանոսից մինչև Սև ծովը ձգվող վիթխարի տարածության վրա, ենթարկված էին միասնական մտահղացման, միասնական նպատակի։ Պատերազմների պատմությունը չգիտեր այնպիսի օրինակներ, երբ զորավարին վիճակված լիներ ղեկավարելու այդպիսի վիթխարի զինված ուժեր։ Ռազմական արվեստի պատմությունը չգիտե այնպիսի փաստեր, երբ այդքան մեծ բանակներ այդպիսի բացառիկ կատարելությամբ միավորված և ուղղված լինեին իրագործելու միասնական խնդիր։ Պատերազմական արշավների պատմությունը անծանոթ են այնպիսի դեպ-



քեր, երբ կարճ ժամանակամիջոցում ձեռք բերվեին այնքան մեծ ռազմա-քաղաքական արդյունքներ, ինչպես անցած տարում Կարմիր Բանակի ձեռք բերած արդյունքները։ Ընկեր Ստալինը Կարմիր Բանակը դարձրեց ժամանակակից բոլոր բանակներից ամենահզորը և ամենաառաջավորը, Կարմիր Բանակը զինեց ամեն տեսակ, այդ թվում նաև ամենաուժեղ թշնամուն հաղթելու գիտությամբ։

Սրանք են մեր պարտիայի լենինյան քաղաքականության հաղթանակները հիտլերյան իմպերիալիստների դեմ պատերազմ մղելու ասպարեզում։ Այդ հաղթանակները հանդիսացան լենինիզմի լիակատար հաղթանակը ռազմական գործի մեջ։

## 2. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԶՈՐՈՒԹՅԱՆ ԱՆՇԵՂ ԱՃՈՒՄԸ

Եթե մեր Կարմիր Բանակը անընդհատ աճեցնելով իր ուժերը ավելի ու ավելի ջախջախման հարվածներ է հասցնում ֆաշիստական որջին, ապա այդ պայքարում նա հենվում է Սովետական պետության անշեղորեն աճող հզորության վրա։

Սովետական պետության հիմնադիրները

և առաջնորդները՝ Վլադիմիր Իլյիչ Լենինը, ընկեր Ստալինը բոլշևիկների պարտիային զինեցին ուսմունքով սոցիալիստական պետության մասին, որպես վճռական ուժի հասարակության վերակառուցման մեջ և սովետական ռեսպուբլիկաների ժողովուրդներին արտաքին թշնամիներից պաշտպանելու գործում։ Այդ գաղափարները սրբությամբ պահպանել, դրանցով ղեկավարվում էր բոլշևիկյան պարտիան, շատ ջանք գործադրելով մեր պետության ամրապնդման վրա։ Պարտիայի աշխատանքը այժմ տվել է իր բեղմնավոր արդյունքները։ Մեր Հայրենիքը փրկություն գտավ մեծ ճարտարապետների պլանով և ղեկավարությամբ կառուցված սովետական պետության անսասան ուժի և ծավալուն հզորության մեջ։

Հիշենք Լենինի մարգարեական խոսքերը... «Ինչպես էլ որ լինեն Ռուսաստանի վրա արշավելու փորձերը և պատերազմական ձեռնարկումները Ռուսաստանի դեմ, իսկ այդպիսի փորձեր դեռևս, հավանաբար, քիչ չեն լինի, բայց մենք արդեն կոփված ենք մեր փորձով և փաստական փորձի հիման վրա գիտենք, որ այդ բոլոր փորձերը հօդս կցնդեն։ Եվ մեր թշնամիների յուրաքանչյուր փորձից հետո մենք



դուրս կգանք ավելի ուժեղ, քան մինչ այդ» (հատ. 25, էջ 420)։

Լենինը սովորեցնում էր, որ պետության ուժի և ամրության մասին նրա վարած քաղաքականության ճշտության և առաջադիմականության մասին կարելի է դատել միայն պատմական զարգացման իրական արդյունքներով։

Մինչև այժմ պատմական փորձը ցույց է տվել, որ երկարատև, ծանր պատերազմներից հետո արյունահեղ պայքարից ուժասպառ եղած ժողովուրդները և պետությունները ծվեն-ծվեն էին լինում ներքին հակասություններից, իսկ հասարակարգի քաղաքական ու տնտեսական հիմքերը թուլանում էին ու խարխլվում։ Օրինակ, առաջին համաշխարհային պատերազմից հետո տնտեսական և քաղաքական ցնցումներից չխուսափեցին ո՛չ պարտվողները, ո՛չ էլ հաղթողները։ Ընկեր Ստալինը նշում էր, որ միայն մեր պետությունը կարող էր դիմանալ ներկայիս պատերազմի այն ծանր փորձություններին, որոնք վիճակվեցին մեր ժողովրդին, ու հաղթահարել դրանք։

Հայրենական պատերազմում ծավալվեց հզոր ուժը սովետական պետության, որը կարողացավ պատերազմ վարելու անքարե-

նպաստ պայմանները դարձնել բարենպաստ, արմատապես փոխել պատերազմի ընթացքը, երկրի բոլոր անսահման միջոցները, ժողովրդի բոլոր անսպառ ուժերը կազմակերպել և էֆեկտիվորեն իրագործել ժողովրդի բուն կյանքի և Հայրենիքի պաշտպանության համար, թշնամուն խորտակելու և պատժելու համար։ Սովետական պետությունը իր այդ բարձր դերը կարողացավ իրականացնել շնորհիվ այն բանի, որ նա մեր պարտիայի պլանով ստեղծված է ամբողջ ժողովրդի կողմից, հօգուտ նրա շահերի, կանգնած է նրա կյանքի ու նրա նվաճումների պաշտպանության դիրքերում։ Բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի միայն սովետական հասարակությանը յուրահատուկ դաշինքը պատերազմի ժամանակ բացահայտեց իր ամենահաղթ ուժը և հնարավորություն տվեց ջախջախելու թշնամուն ու պաշտպանելու մեր ժողովուրդների դարավոր նվաճումները։

Ժողովրդական իմաստությունը պահպանել է ռուսական հին ավանդությունը մեծ ընտանիքի մասին, որի եղբայրներից և ոչ մեկը չկարողացավ կոտրել ճիպոտների կապոցը, սակայն նրանցից յուրաքանչյուրը կոտրում էր այդ ճիպոտները մեկ-մեկ վերցրած։



Հայրն ասում է զավակներին. «Այդպես էլ և դուք։ Եթե ապրեք համերաշխ, ոչ ոք ձեզ չի հաղթի։ Իսկ եթե գժտվեք և բաժանվեք իրարից, յուրաքանչյուր ոք հեշտությամբ կխորտակի ձեզ»։ Սովետական Միության ժողովուրդները լավ գիտեն, որ իրար հետ դաշինքով ու բարեկամությամբ միաձուլված նրանք կազմում են անպարտելի ուժ, իսկ եթե բաժան ապրեին, գերմանական գիշատիչը չէր վրիպի օգտվելու դրանից։ Դժվար չէ պատկերացնել, թե ինչ կպատահեր Ուկրաինայի, Բելոռուսիայի, Մոլդավիայի և սովետական մյուս ռեսպուբլիկաների հետ, եթե նրանց պատահած աղետի մեջ նրանց օգնության չհասներ ռուս ժողովուրդը և Սովետական Միության մյուս ժողովուրդները։ Սովետական Միության բոլոր ժողովուրդների մարտական համագործակցությունը մեր Հայրենիքը փրկեց օտարերկրյա նվաճումից։

Մեր սովետական էկոնոմիկան, մեր ինդուստրիան և կոլխոզային կարգերը պատերազմի ժամանակ հաստատ ու հուսալի հիմք ծառայեցին պատերազմը հաջողությամբ վարելու համար։ Սովետական բանվորների, ինժեներների, տեխնիկների լարված աշխատանքի շնորհիվ Կարմիր Բա-

նակն այժմ ոչ թե քիչ, այլ ավելի շատ տանկ, ինքնաթիռ, հրանոթ ունի, քան գերմանական բանակը։ Այդ բանում ակնառու կերպով արտացոլվեցին զարգացման երկու հակադիր գծեր՝ սովետական հասարակության հարաճուն զարգացումը ի հակադրություն գերմանա-ֆաշիստական պետության անկման և պրոգրեսիվ թուլացման։

Պատերազմի ընթացքում նոր ուժով դրսևորվեց կոլխոզային կարգերի ամրությունը, կոլխոզային գյուղացիության հայրենասիրությունը։ Ռազմաճակատին օգնելու ուղղությամբ կատարած իր անձնվեր աշխատանքով սովետական գյուղացիությունը ցույց տվեց, որ նա ներկայիս պատերազմը համարում է իր պատերազմը, իր հարազատ, կենսականորեն կարևոր գործը։

Վերջերս ուկրաինացի մի ծերունի գյուղացի ցանկություն հայտնեց լեհական տերիտորիայից վերաբնակվելու Ուկրաինա և կոլխոզ մտնելու։ Այդ գյուղացին դատում էր. «Գերմանական բանակը ջախջախել է Լեհաստանին և եվրոպական շատ այլ երկրների։ Կարմիր Բանակը ջարդեց գերմանական բանակին, բայց չէ՞ որ գերմանական բանակին ջախջախած սովետական բանակը մեծ մասամբ կազմված է կոլ-



խոզնիկներից։ Իսկ եթե կոլխոզնիկները հարվածում են ֆաշիստներին և կոլխոզային հարազատ գործի համար չեն խնայում իրենց արյունը, ուրեմն կոլխոզում նրանք վատ չեն ապրում, իսկ կոլխոզը նրանց համար կյանքից թանկ է։ Այդ դեպքում ես էլ կոլխոզային կյանքի կողմնակից եմ» (աշխուժություն դահլիճում)։

Սովետական հասարակության ստեղծած կոլխոզային կարգերը հաստատվեցին որպես գյուղացիների հասարակական կյանքի մեր ժամանակում ամենաբարձր և առավել կենսունակ ձևը։

Թշնամուն ջախջախելու գործում անգնահատելի ավանդ մտցրեց սովետական ինտելիգենցիան։ Ընկեր Ստալինը նշել է, որ սովետական ինտելիգենցիան անմիջական ղեկավարող օգնություն է ցույց տալիս բանվորներին ու գյուղացիներին՝ մեր ռազմական տնտեսության հետագա վերելքի գործում։

Պատմության մեջ դեռևս չի եղել այնպիսի օրինակ, որ ժողովուրդը այդպիսի կրքոտությամբ, այդպիսի ոգևորությամբ և այդպիսի բարձր գիտակցությամբ պայքարեր իր հայրենիքի համար, ինչպես սովետական ժողովուրդն է պայքարում ներ-

կայիս Հայրենական պատերազմում: Այժմ չկա այնպիսի ուժ, որը կարողանա ընկճել կամ խախտել սովետական պետության հզորությունը:

*Վլադիմիր Իլյիչ Լենինը, որ կանգնած էր 20-րդ դարի գիտության գագաթին, մարմնավորել էր մեր տաղանդավոր ժողովրդի իմաստունությունը, պարզ տեսնում էր, որ երկարատև մեծ պատերազմը ամեն մի պետության ամրության, ամեն մի հասարակարգի կենսունակության, յուրաքանչյուր պարտիայի աշխարհայացքի ճշտության և քաղաքականության առաջադիմականության ամենաանողոք քննությունն է: Սովետական պետությունը, ինչպես ուրիշ ոչ մի պետություն, բռնեց այդ քննությունը: Նա ոչ միայն իրեն պաշտպանեց ֆաշիստական հորդաների արշավանքից, այլև Եվրոպայի շատ ժողովուրդների փրկեց ֆաշիզմի կողմից ստրկացվելուց: Սովետական պետությունն այժմ Եվրոպայի ժողովուրդներին օգնում է ազատագրվելու հիտլերյան բռնակալությունից և վերականգնելու իրենց պետական սուվերենիտետը: Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Մեծ Միության այդ պատմական ազատագրական դերը սովետական պետության միջազ-*



*գային հեղինակության աճման, նրա արտաքին-քաղաքական կապերի ընդլայնման և ամրապնդման կարևորագույն պատճառներից մեկն է:*

*Այսպիսով,* մեր սովետական պետության հզորության անշեղ ամրապնդման ասպարեզում ընկեր Ստալինի վարած լենինյան իմաստուն քաղաքականությունը լիովին հաղթանակ տարավ: (Ծափահարություններ):

## 3. ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԵՎ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ

*Պատմությունը տվել է բանակների ու պետությունների ռազմական ու քաղաքական խոշոր հաղթանակների շատ օրինակներ: Սակայն վերջին դարերի պատմությունը չգիտե այնպիսի պատերազմներ, որոնք հաղթողին բերեին ո՛չ միայն ռազմական հաջողություն, այլև գաղափարական ու բարոյական հաղթանակ հակառակորդի դեմ: Հայրենական պատերազմը իր ռազմական հաղթանակների հետ միասին մեր երկրի ժողովուրդներին բերեց իդեոլոգիական և բարոյական խոշոր հաղթանակներ:*

ժամանակակից պատերազմում ֆաշիստական ռասայական, ոչ-գերմանական ժողովուրդներին ճնշելու և ոչնչացնելու կողմնակից աշխարհայացքի, և սովետական՝ ժողովուրդների բարեկամության կողմնակից աշխարհայացքի միջև մղվող պայքարում լիակատար հաղթանակ տարավ մեր սովետական առաջավոր աշխարհայացքը։

Ամենուրեք, որտեղ ներթափանցում էին սվաստիկայի դրոշմը կրող գերմանա-ֆաշիստական շները, այնտեղ ժողովուրդները և պետությունները զրկվում էին ազատությունից ու անկախությունից, անխնա արմատախիլ էին արվում դեմոկրատական երկրների ազգային տրադիցիաները, բոլոր ազնիվ ու պրոգրեսիվորեն մտածող մարդիկ կալանավորվում էին համակենտրոնացման ճամբարներում կամ մեռցվում, աշխատավոր բնակչությունը վերածվում էր ստրուկների, ոչնչացվում էին ժողովուրդների քաղաքակիրթ կյանքի հիմունքները։

Գերմանական զորքերի կողմից իրենց օկուպացրած եվրոպական երկրներում կատարած չարագործությունները միանգամայն համապատասխանում են ֆաշիստական գազանային նացիոնալիզմի իդեոլոգիային



և տեսությանը՝ ոչ-գերմանական բոլոր ժողովուրդների հանդեպ։

Պատմությունից հայտնի է, որ դեռ երբեք ո՛չ մի պետության չի հաջողվել երկար ժամանակով, դրսից, բռնի կերպով իր իդեոլոգիան և իր ռեժիմը փաթաթել մյուս ժողովուրդների վզին։ Ներկայիս պատերազմի փորձը այդ տեսակետից ավել է առանձնապես ուսանելի դասեր։ Հիտլերականները որքան էլ հրի ու սրի, տաժանակրության և կախաղանների միջոցով ճգնում էին եվրոպական երկրներում արմատավորել ֆաշիստական կարգերը՝ իրենց թունավոր իդեոլոգիայով, ի պատասխան դրան նրանք ստանում էին ստրկացված ժողովուրդների զայրույթը, պարտիզանների դիպուկ գնդակները, հայրենասերների վրեժխնդրությունը։

Այս է վայրենի գազանների իրենց մոբալը, գազազած ստրկատերերի իրենց իդեոլոգիան մեր մոլորակի մեջ ներկայումս բնակվող ավելի քան երկու միլիարդ մարդկանց վզին փաթաթելու ուղղությամբ հիտլերականների դատապարտված փորձերի ողբալի արդյունքը։ Հայրենական պատերազմի ընթացքում ծավալվեց հիտլերիզմի գազանային իդեոլոգիայի և նողկալի

մորալի անողոք մերկացումը և լիկվիդացիան։ Ֆաշիզմը պարտված դուրս եկավ ո՛չ միայն ճակատամարտերի դաշտերում, այլև իդեոլոգիայի ասպարեզում։

Ընկեր Ստալինը վառ խոսքերով հանրագումարի բերեց հիտլերիզմի իդեոլոգիայի դեմ ազատասեր ժողովուրդների կողմից մղվող պայքարի արդյունքները։ «Ռասայական ատելության իդեոլոգիան ու քաղաքականությունը,— ասում է ընկեր Ստալինը, —հիտլերյան ավազակային բլոկի քայքայման գործոններից մեկն են հանդիսանում։ Պատահականություն չի կարելի համարել այն փաստը, որ գերմանական իմպերիալիստների դեմ ոտքի կանգնեցին ո՛չ միայն Ֆրանսիայի, Հարավսլավիայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունաստանի, Բելգիայի, Դանիայի, Նորվեգիայի, Հոլլանդիայի ստրկացված ժողովուրդները, այլ նաև Հիտլերի նախկին վասալները՝ իտալացիները, ռումինացիները, ֆինները, բուլղարները։ Հիտլերյան կլիկը իր մարդատյաց քաղաքականությամբ Գերմանիայի դեմ հանեց աշխարհի բոլոր ժողովուրդներին, իսկ այսպես կոչված «գերմանական ընտրյալ ռասան» դարձավ ընդհանուր ատելության առարկա»։



Չնայած ֆաշիստական իդեոլոգիայի և քաղաքականության լիակատար սնանկությանը, արտասահմանում դեռևս կան ո՛չ քիչ թվով ֆաշիստական թափթփուկներ, որոնք կեղծավոր կերպով ընդհանուր ներումն են քարոզում պատերազմի հանցավորների համար։ Սակայն ժողովուրդները շատ ծանր ու դառն փորձով համոզվել են հիտլերյան ավազակային բանդային ընմիշտ վերջ դնելու անհրաժեշտության մեջ։ Չէ՞ որ հիտլերականներին ներելը նշանակում է խրախուսել մարդասպաններին ու բռնադատիչներին, Միավորված Ազգերի միլիոնավոր քաղաքացիների վաղաժամ մահվան համար մեղավորներին։ Արյունարբուներին ներելը նշանակում է, հիտլերականներին հնարավորություն տալ ռևանշ պատրաստելու ներկայիս պարտության համար և ուղի հարթել համաշխարհային նոր պատերազմի համար։

Մեր երկրում, որտեղ չկա՛ն և չե՛ն կարող լինել հիտլերյան իժերին համակրող մարդիկ, ամբողջ ժողովուրդը լի է վճռականությամբ՝ մինչև վերջը հասցնել ֆաշիզմի ռազմական, բարոյական-քաղաքական և իդեոլոգիական ջախջախումը, ամբողջովին լիկվիդացնել գերմանա-ֆաշիս-

տական ավազակային բույնը Եվրոպայի կենտրոնում՝ այդ շարյաց ծնունդը և դժբախտության աղբյուրը աշխարհի բոլոր ժողովուրդների համար։

Հիտլերիզմի բարոյական-քաղաքական և իդեոլոգիական պարտությունը նշանակում է, որ Լենինի և Ստալինի ստեղծած՝ ժողովուրդների բարեկամության սովետական իդեոլոգիան այս պատերազմում լիակատար հաղթանակ է տարել ռասայական և ազգային ատելության ֆաշիստական իդեոլոգիայի դեմ։

Որո՞նք են այժմ հիտլերիզմին հաղթող սովետական հասարակության շարժիչ կենսական մեծ ուժի՝ սովետական ժողովուրդների բարեկամության պատճառները։ Ժողովուրդների բարեկամության ուղին, նրա իրականացման պայմաններն ու բնույթը հայտնագործվեցին և տեսականորեն հիմնավորվեցին բոլշևիկների պարտիայի, նրա առաջնորդներ Լենինի և Ստալինի կողմից։ Մեր պարտիան միշտ էլ ազգային թշնամանքին դեմ է եղել, հանուն բոլոր ռասաների, ազգերի, ժողովուրդների համերաշխության և համատեղ միահամուռ պայքարի, հանուն նրանց ընդհանուր նպատակների, միշտ պայքարել է ազգային երկպա-



ռակությունը վերացնելու համար։ Բոլշևիկ-
ների պարտիան ցույց է տվել, իսկ պատ-
մական փորձը հաստատել է այդ, որ ազ-
գային թշնամանքի լիակատար վերացումը
և ժողովուրդների եղբայրական համագոր-
ծակցության հաստատումը միասնական
պետության մեջ հնարավոր է այն երկ-
րում, որտեղ իշխանությունը և հողը պատ-
կանում են բուն ժողովրդին։ Եվ այդ հաս-
կանալի է։ Սովետական հասարակության
պայմաններում վերացված են ժողովուրդ-
ների իսկական եղբայրության և հավասա-
րության ստեղծելու ճանապարհին եղած
գլխավոր խոչընդոտները։ Այստեղ չկան
ժողովրդին հարստահարողների դասակար-
գեր, որոնք առաջացնում ու խրախուսում
էին ազգամիջյան կռիվները, այստեղ ան-
հետանում է տարբեր ազգերի փոխադարձ
անվստահությունը, որը հիմնված է հասա-
րակության աննշան փոքրամասնության
կողմից բոլոր ազգերին շահագործելու վր-
րա, բանվորների և գյուղացիների պետու-
թյունը որպես ժողովուրդների ամեն տե-
սակ ստրկացման հետևողական հակառա-
կորդ, կանգնած է ամբողջ հասարակու-
թյան շահերի պաշտպանության դիրքերում.
ժողովուրդներն առանց հատուցման ան-

կեղծորեն օգնություն և աջակցություն են ցույց տալիս մեկը մյուսին քաղաքական գործերում, տնտեսության և կուլտուրայի զարգացման ասպարեզում։ Սովետական իշխանությունն իր բնությամբ և իր ամբողջ քաղաքականությամբ միավորում է ժողովուրդներին և բարեկամություն է առաջ բերում նրանց մեջ։

Սովետական հասարակական հարաբերությունների շնորհիվ ժողովուրդների ազգային տրադիցիաները անխզելիորեն կապվում են պետության ընդհանուր շահերի հետ ամբողջությամբ վերցրած։ Դա իր հիմքում վերացնում է ժողովուրդների միջև եղած վաղեմի թշնամանքը և պայմաններ է ստեղծում արմատապես տարբեր, նոր, եղբայրական հարաբերությունների համար նրանց միջև։

Այստեղից հետևում է, որ սովետական հասարակարգը միավորում և համախմբում է ժողովուրդներին։ Ահա թե ինչու ընկեր Ստալինը սովորեցնում է, որ սովետական հասարակարգը հանդիսանում է «այն բազան, այն հիմքը, որի հիման վրա կարող է կառուցվել ժողովուրդների եղբայրական համագործակցությունը պետական միասնա-



կան միության մեջ» («Մարքսիզմը և ազգային գաղութային հարցը», էջ 105)։

Ժողովուրդների միասնությունը մեր սովետական հասարակության պայմաններում ամբողջովին կառուցված է կամավոր դաշինքի վրա, որը թույլ չի տալիս մեկ ազգի որևէ բռնություն մյուսի նկատմամբ, բոլոր ազգերի և ռասաների իրավունքների հավասարության վրա հասարակական, տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր ասպարեզներում, Սովետական Միության բոլոր ժողովուրդների լիակատար փոխադարձ վստահության և փոխադարձ օգնության վրա, միասնական միութենական պետության սիստեմում սովետական բոլոր ժողովուրդների շահերի ընդհանրության միանգամայն պարզ և բարձր գիտակցության վրա։

Սովետական ժողովուրդների դաշինքը, նրանց եղբայրությունը և բարեկամությունը, նրանց միասնությունը անցել են խաղաղ ժամանակի լուրջ քննության բովով և բռնել են այդ քննությունը։ Ընկեր Ստալինը ասում է, որ «Սոցիալիզմի բազայի վրա ստեղծված բազմազգ պետության կազմա-

*կերպելու փորձը լիովին հաջողվեց» («Լենինիզմի հարցերը», էջ 513)։*

*Սովետական ժողովուրդների դաշինքը, նրանց եղբայրությունը և բարեկամությունը, նրանց միասնությունը դիմացան նաև պատերազմի ժամանակվա դաժան փորձություններին։* «Մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը,— *ասել է ընկեր Ստալինը,— դիմացավ պատերազմի բոլոր դժվարություններին ու փորձություններին և է՛լ ավելի կոփվեց ֆաշիստական զավթիչների դեմ սովետական բոլոր մարդկանց կողմից մղվող ընդհանուր պայքարում։ Այդ է Սովետական Միության ուժի աղբյուրը» («Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի մասին», էջ 109)։*

Պատերազմը ցույց տվեց մեր ժողովրդի գաղափարական և բարոյական մեծ ուժը։ Սովետական մարդիկ թշնամուն հաղթում են ո՛չ միայն զենքի ուժով, այլև իրենց աշխարհայացքի գերազանցությամբ։

Այդ բանում երևան եկավ մեր պանծալի պարտիայի լենինյան-ստալինյան իդեոլոգիայի հաղթանակը և ամենահաղթ ուժը։



## 4. ԼԵՆԻՆ-ՍՏԱԼԻՆԻ ՊԱՐՏԻԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻՆ ՏԱՆՈՒՄ Է ԴԵՊԻ ՎԵՐՋՆԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿ ԸՆԴԴԵՄ ԹՇՆԱՄՈՒ

*Եթե Հայրենական պատերազմում սովետական ժողովուրդը մինչև վերջը պաշտպանեց իր Հայրենիքը, իսկ նրա բանակը համարձակորեն խորտակելով թշնամուն, արընթաց առաջ է գնում դեպի արևմուտք և մենք գտնվում ենք թշնամու դեմ լիակատար հաղթանակ տանելու նախօրյակին, ապա դրա պատճառը մեր պարտիայի ճիշտ և իմաստուն լենինյան քաղաքականությունն է։ Բոլշևիկների պարտիան ,որն իր շարքերի մեջ ընդգրկել է մեր սովետական հայրենիքի առավել գիտակից, կայուն և հետևողական հայրենասերներին, հավատարիմ Լենինի դրոշին, սովետական ժողովրդին համառ կերպով դաստիարակում էր իր սովետական Հայրենիքի նկատմամբ նվիրվածության և սիրո ոգով։ Իսկ մեր երկրի թշնամիների մասին, որոնք ոտնձգություն էին կատարում նրա հարստությունների վրա, պարտիան ասում էր բանվորներին, գյուղացիներին, ինտելիգենցիային Լենինի խոսքերով. «Մենք*

պետք է նրանց այնպես դաս տանք, որ նրանք իրենց երեխաներին, թոռներին ու ծոռներին պատվիրեն այդ բաները չանել...» (հատ. 25, էջ 299)։

Սովետական ժողովուրդը անշեղորեն հետևում է մեր պանծալի պարտիային՝ նրա այդ լենինյան քաղաքականության մեջ։ Սովետական Միությունը հայրենասերների, հայրենասեր-ռազմիկների, հայրենասեր-աշխատավորների երկիր է։ Մեր պարտիայի լենինյան ուղին սովետական հասարակությանը հասցրեց ծաղկման ու ամրապնդման։

Այդ է մեր պարտիայի մեծ ուժը։

Ներկայիս պատերազմում բոլշևիկների պարտիան կարողացավ իր դրոշների տակ հավաքել սովետական տասնյակ միլիոնավոր մարդկանց Հայրենիքի պաշտպանության համար, ամենադժվարին պայմաններում կազմակերպել Սովետական Միության վրա կատարած թշնամու արշավանքի ջախջախումը։ Ընկեր Ստալինը ասում է. «Պետությունների պատմության մեջ, երկրների պատմության մեջ, բանակների պատմության մեջ դեպքեր են եղել, երբ եղել են հաջողության, հաղթանակի բոլոր հնարավորությունները, բայց դրանք, այդ հնարավորությունները ի դերև են անցել, որովհետև ղե-



կավարները չէին նկատում այդ հնարավորությունները, չէին կարողանում օգտվել դրանցից, և բանակները պարտություն էին կրում» («Լենինիզմի հարցերը», հրատ. 11, էջ 323)։ Պատմական այս փորձը պարտիան հաշվի առավ լիովին։ Բոլշևիկյան պարտիան անուշադիր չթողեց թշնամուն պարտություն պատճառելու ոչ մի հնարավորություն։ Պարտիան ոգեշնչեց և թշնամու դեմ պայքարի հանեց սովետական միլիոնավոր մարդկանց, բազմապատկեց սովետական ժողովրդի հոգևոր և նյութական ուժերը, նրան զինեց մեր արդար գործի հաղթանակի անսասան հավատով։ Սովետական մարդիկ մարտի գնացին մեծ Լենինի ոգով տոգորված, Ստալինի անունը շուրթներին։ (Ծափահարություններ)։ Մեր պարտիայի լենինյան ուղին հասցրեց պատմական հաղթանակների ընդդեմ թշնամու։

Այդ է մեր պարտիայի իմաստնությունը։

Լենինի-Ստալինի պարտիան, որը Հայրենական պատերազմում պաշտպանեց համաժողովրդական գործը, այժմ է՛լ ավելի ազդեցիկ ու հեղինակավոր է սովետական միլիոնավոր ռազմիկների և աշխատավորների մեջ, է՛լ ավելի խոր կերպով և անխզելիորեն է կապված ժողովրդի հետ։ Մեր բոլշևիկյան

*պարտիայի հեղինակությունը կայուն է և անսասան։ Զուր չէ, որ պատերազմի ծանր օրերին նորանոր միլիոնավոր բանվորներ, կոլխոզնիկներ ու ինտելիգենցիա իրենց բախտը կապեցին Լենինի-Ստալինի պարտիայի հետ։ Այժմ մեր պարտիայի շարքերում կա 5 միլիոն 700 հազար մարդ։ Լենինյան ուղին, որով այս բոլոր տարիներին ընթացել է բոլշևիկյան պարտիան, պարտիային հասցրեց փառավոր հաղթանակների, և՛ ավելի ուժեղացրեց նրան, ամրապնդեց նրա շարքերը։*

*Այդ է մեր պարտիայի պատմական իրավացիությունը, նրա ղեկավարության անդեբրազանցելի ուժը։*

*Բոլշևիկների պարտիան Լենինի կողմից շարունակ դաստիարակվել է անընդհատ առաջ գնալու ոգով։ Ընկեր Ստալինը պարտիային և ժողովրդին սովորեցնում է երբեք կանգ չառնել ձեռք բերված արդյունքների վրա, չհանգստանալ հաջողություններով, անշեղորեն առաջ գնալ, իր ջանքերի նորանոր լարումով հարաճուն գերակշռություն նվաճելու համար թշնամու նկատմամբ և վերջնականապես խորտակելու համար։ Պարտիայի լենինյան քաղաքականությունը, որը բաց է անում միշտ նորանոր հեռա-*



*նկարներ, պարտիային մոբիլիզացնում է իրագործելու շլուծված խնդիրները, բոլշևիկներին դարձրել է խորաթափանց, կայուն և առնական։*

*Այդ է մեր պարտիայի ուժն ու հեռատեսությունը։*

*Լենինը կոմունիստների պարտիային զինել է հասարակության զարգացման օրենքների բազմակողմանի գիտությամբ, սովետական պետության շինարարության օրենքներով։ Հայտնի է, թե Լենինի մահվանից հետո որքան բարդացավ հասարակության զարգացումը։ Եվ ի՞նչ։ Մեր պարտիան, ընկեր Ստալինը, նորանոր մեծ և բարդ հարցերը լուծում են նույնքան խոր կերպով ու համարձակորեն, ճիշտ ու խորաթափանցորեն, ինչպես նման հարցերը լուծում էր մեծ Լենինը։*

*Այդ է բոլշևիկյան պարտիայի ուժն ու անպարտելիությունը։*

*Ընկեր Ստալինը մեր բոլշևիկյան պարտիան անվանել է պրոլետարական մեծ ստրատեգի բանակ, ընկեր Լենինի բանակ։ Սովետական մարդիկ գիտեն և սիրում են այդ ոգեշունչ խոսքերը։ Այսօր սովետական ժողովուրդը առանձնահատուկ խանդավառությամբ է կրկնում դրանք և ասում. Այո՛,*

մենք բոլորս, սովետական մարդիկս, պատկանում ենք ընկեր Լենինի բանակին, ընկեր Ստալինի բանակին, որոնց դրոշներով սովետական ժողովուրդը ձեռք է բերել այնքան հաղթանակներ: Չկա ավելի բարձր պատիվ ու պարծանք, քան այդ բանակին պատկանելը, որին մարտի է տանում ընկեր Ստալինը: (Բուռն ծափահարություններ):

Կեցցե՛ մեր պանծալի բոլշևիկյան պարտիան, Լենինի-Ստալինի պարտիան: (Ծափահարություններ):

Կեցցե՛ Կարմիր Բանակը՝ ազատարար բանակը: (Ծափահարություններ):

Կեցցե՛ լենինիզմը, մեր հավատարիմ և հաղթական դրոշը: (Ծափահարություններ):

Կեցցե՛ մեր հերոսական բանակի և սովետական ժողովրդի մեծ առաջնորդ՝ ընկեր Ստալինը: (Ամբողջ դահլիճի բուռն օվացիա: Նիստի մասնակիցները ոտքի կանգնած երգում են պարտիայի հիմնը՝ «Ինտերնացիոնալը»):

---



# ԴՈՒՄԲԱՐՏՈՆ-ՕՔՍԻ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ

> Պատասխանում ենք Մեղրու շրջանային թերթի պատասխանատու քարտուղար, աշխատող ընկ. Ա. Մարգարյանի հարցին:

Ընկեր Ստալինը Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձի մասին տված զեկուցման մեջ հատուկ կերպով ընդգծեց հետպատերազմյան շրջանում հաստատուն խաղաղություն ստեղծելու և անվտանգություն ապահովելու հարցը:

«Գերմանիայի դեմ պատերազմը շահելը,— ասում է ընկեր Ստալինը,— նշանակում է պատմական մեծ գործ կատարել: Սակայն պատերազմ շահելը դեռևս չի նշանակում ժողովուրդների համար հաստատուն խաղաղություն և հուսալի անվտանգություն ապահովել ապագայում: Խնդիրը

ո՛չ միայն պատերազմը շահելն է, այլև նոր ագրեսիայի և նոր պատերազմի առաջացումն անհնարին դարձնելը եթե ոչ ընդմիշտ, ապա գոնե տևական ժամանակամիջոցի ընթացքում»: Այնուհետև ընկեր Ստալինը կանխատեսում է, որ «ագրեսիվ ազգերին լրիվին զինաթափելուց բացի, գոյություն ունի միայն մեկ միջոց՝ խաղաղասեր երկրների ներկայացուցիչներից ընտրել խաղաղության պաշտպանման և անվտանգության ապահովման հատուկ կազմակերպություն, այդ կազմակերպության ղեկավար օրգանի տրամադրության տակ դնել ագրեսիան կանխելու համար պահանջվող զինված ուժերի նվազագույն անհրաժեշտ քանակը, և այդ կազմակերպությանը պարտավորեցնել, անհրաժեշտության դեպքում, անհապաղ գործի դնել այդ զինված ուժերը ագրեսիան կանխելու կամ լիկվիդացնելու և ագրեսիայի մեղավորներին պատժելու համար»:

Նախատեսվող Միջազգային Կազմակերպությունը չպետք է լինի տխրահռչակ Ազգերի Լիգայի կրկնություն, որը չուներ ո՛չ իրավունք, ո՛չ միջոցներ ագրեսիան կանխելու համար:

Նախքան այդ կազմակերպության նախա-



տեսվող կառուցվածքին և գործունեության անցնելը, անհրաժեշտ է նշել, որ ամեն անգամ երբ պատերազմները համաշխարհային բնույթ են ստանում, այդ պատերազմների կրակի ու բոցերի մեջ միտք է ծագում հետպատերազմյան շրջանում երկարատև խաղաղություն ստեղծելու և նոր ագրեսիայի վտանգը կանխելու մասին:

Առաջին համաշխարհային պատերազմից հետո Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտ Վիլսոնի գլխավորությամբ միջազգային անվտանգության կազմակերպություն ստեղծելու առաջին փորձն արվեց՝ դա Ազգերի Լիգան էր, որը լիակատար կրախի մատնվեց: Ազգերի Լիգայի անփառունակ վախճանի պատճառները երկու տեսակ էին՝ նախ նրա կազմակերպական կառուցվածքի թերություններն էին, երկրորդ՝ մեծ տերությունների քաղաքականության բնույթը:

Ընկ. Տայգինը «Բոլշևիկ» ամսագրի 1944 թվի 21-րդ համարում տպագրված իր հոդվածում կազմակերպական ասպարեզում Ազգերի Լիգայի թերությունները համարում է հետևյալը.

1. Ազգերի Լիգայի կանոնադրության համաձայն մեծ և փոքր տերությունները

միատեսակ պատասխանատվություն էին կրում: Լիգայի ամեն մի անդամ միայն մեկ ձայն ուներ Ասամբլեայում և Խորհրդում: Քվեարկությունների ժամանակ Անգլիան և Կոստա-Րիկան, ՍՍՌՄ-ը և Ալբանիան նույն տեսակարար կշիռն ունեին: Կարևոր հարցերի՝ առաջին հերթին անվտանգության առթիվ որոշումներ ընդունելու համար պահանջվում էր միաձայնություն, ապա լինում էին դեպքեր, երբ մի փոքրիկ երկիր տապալում էր բանաձևը:

2. Ազգերի Լիգայի կանոնադրությունը իր բոլոր անդամների վրա ձևականորեն զանազան պարտավորություններ էր դընում, որոնց թվում՝ ագրեսիայի դեմ բոլոր միջոցներով պայքարելը, բայց մի քանի տասնյակ պետությունների վրա տարածվող այդ ընդհանուր պարտավորությունը չէր կատարվում:

3. Լիգան փոխանակ ագրեսորների դեմ արագ կերպով պայքարելու, սկսում էր ստեղծել բազմաթիվ կոմիտեներ, հանձնաժողովներ, հետաքննություններ, հաշվետվություններ, զեկուցումներ և այլն: Լիգայի անճարակության պատճառով այդ խոսքերը գործի չէին վերածվում: Լիգայում բացակայում էին ռազմական և իրա-



վասության օրգանները: Բացի դրանից մշուշապատ էին ընդգծված Խորհրդի իրավունքները, շատ հաճախ տարաձայնություններ և վիճաբանություններ էին դընում Ասամբլեայի և Խորհրդի միջև, թե որքան պարտադիր է առաջինի հանձնարարությունները՝ երկրորդի համար:

4. Լիգան զբաղվում էր ամեն բանով, բայց ոչ խաղաղության և ագրեսիան կանխելու հարցերով: Լիգայի քաղաքական գործունեությունը խեղդվում էր նրա հումանիտար ակտիվության պատճառով:

Լիգայի թերություններից էր նաև այն, որ նրա կազմակերպման առաջին իսկ օրից մի քանի մեծ պետություններ, այդ թվում նաև ՍՍՌՄ-ը չմասնակցեցին նրա ստեղծմանը: Միայն 1934 թվի վերջերին, այսինքն Լիգան հիմնվելուց 15 տարի հետո, միջազգային դրության ասպարեզում տեղի ունեցած խոշորագույն փոփոխությունների հետևանքով ՍՍՌՄ հրավիրվեց և ընդունվեց նրա կազմում: Սակայն նույնիսկ դրանից հետո էլ դեպի Սովետական Միությունը տածվող թշնամանքը շարունակում էր թունավորել մեծ և փոքր տերությունների քաղաքականությունը:

Ազգերի Լիգայի կրախի պատճառ-

ները միայն կազմակերպական թերությունները չէին: Սովետական Ռուսաստանի նկատմամբ Լիգայի ունեցած թշնամանքը նրա ճակատագրական սխալն էր: Առանց ՍՍՌՄ-ի, հնարավոր չէր Եվրոպայում հաստատուն և տևական խաղաղություն ու անվտանգություն ապահովելը:

Ազգերի Լիգայի թուլացման պատճառներից էր նաև այն, որ ԱՄՆ-ի պրեզիդենտ Վիլսոնը, հանդիսանալով Լիգայի գլխավոր ստեղծողն ու հիմնադիրը, հրաժարվեց հաստատել Վերսալի պայմանագիրը, ներառյալ նաև Ազգերի Լիգայի կանոնադրությունը: Ամերիկայի Միացյալ Նահանգները Լիգայի գոյության առաջին իսկ օրից չմտան նրա կազմի մեջ: Լիգայի կազմից 1933 թվին դուրս եկավ Ճապոնիան— Մանջուրիայի դեմ ագրեսիվ քայլ կատարելու կապակցությամբ: Այդ ժամանակ Լիգայից հեռացավ նաև Գերմանիան, իսկ 1937 թվին դուրս եկավ Իտալիան, որպես պատերազմի կեղտոտ հրձիգներ սկսեցին իրենց ագրեսիան և նորից բորբոքեցին ու պատճառ դառան համաշխարհային նոր պատերազմի:

Այսպիսով տխրահռչակ Ազգերի Լիգան



քայքայվեց և անփառունակ վախճան ունեցավ: Ազգերի Լիգայի կազմի մեջ մտնող շատ երկրներ, խախտելով իրենց պարտավորությունները, դարձան ագրեսորներ, պատերազմի կեղտոտ հրձիգներ: Հիտլերյան Գերմանիան նորից պատճառ դարձավ երկրորդ համաշխարհային պատերազմի, միլիոնավոր անմեղ մարդկանց զոհերի:

Հիտլերյան Գերմանիայի դեմ դաշնակից երկրների մոտալուտ հաղթանակի նվիրական ձգտումը օրակարգի հարց է դարձրել՝ Եվրոպայի ժողովուրդների պետական, տնտեսական և կուլտուրական կյանքի կազմակերպումը և վերաստեղծումը:

Պաշտպանության Պետական Կոմիտեի Նախագահ ընկեր Ստալինը Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 26-րդ տարեդարձի մասին տված զեկուցման մեջ ասել է.

...«Եվրոպայում այնպիսի կարգ սահմանենք, որ լիովին բացառեր Գերմանիայի կողմից նոր ագրեսիայի հնարավորությունը.

Ստեղծենք Եվրոպայի ժողովուրդների երկարատև տնտեսական, քաղաքական և կուլտուրական համագործակցություն՝ հիմնված փոխադարձ վստահության և փոխադարձ օգնության վրա՝ նպատակ ունենալով վերականգնել գերմանացիների ավերած տնտեսությունն ու կուլտուրան»!

Դաշնակիցների ընդհանուր գործում կարևոր ավանդ հանդիսացավ 1943 թվի հոկտեմբերի 10-ից մինչև 30-ը Մոսկվայում տեղի ունեցած Ամերիկայի Միացյալ Նահանգների, Միացյալ Թագավորության և Սովետական Միության Արտաքին գործերի Մինիստրների կոնֆերանսը, որը ունեցավ 12 նիստ: Դաշնակից տերությունները այդ ժամանակ ամենաառաջին նպատակին ունենալով պատերազմի վախճանի արագացումը, միաբան գտնվեցին նաև այն հարցում, որ նրանց ազգային սեփական շահերի համար կարևոր է սերտ համագործակցությունը շարունակել հետպատերազմյան ժամանակաշրջանում ևս: Այդ հարցի քննարկման արդյունքը հանդիսացավ ընդհանուր անվտանգության վերաբերյալ դեկլարացիան, որին արդեն կոնֆերանսի ժամանակ միացավ չինական կառավարությունը: Դեկլարացիան նախատեսնում է.



«... Որ նրանք անհրաժեշտ են համարում հնարավոր կարճ ժամկետում հիմնել ընդհանուր Միջազգային Կազմակերպություն, բոլոր ազատասեր պետությունների սուվերեն իրավահավասարության սկզբունքի հիման վրա հիմնված միջազգային խաղաղությունը և անվտանգությունը պահպանելու համար, որի անդամ կարող են լինել, թե մեծ և թե փոքր բոլոր ազատասեր պետությունները:

...Որ պատերազմի վերջանալուց հետո նրանք իրենց զինված ուժերը չեն գործադրի մյուս պետությունների տերիտորիաներում, բացի միայն համատեղ կոնսուլտացիայից հետո և այս դեկլարացիայով նախատեսված նպատակների համար»:

Մոսկվայի Դեկլարացիայով չորս տերությունները արտահայտեցին ոչ միայն իրենց ժողովուրդների կամքը, այլև այն բոլոր ժողովուրդների ցանկությունները, որոնք ձգտում են հետպատերազմյան շրջանում ազատագրվել նոր ագրեսիայի սպառնալիքից:

Մոսկվայում ընդունված այդ որոշման համաձայն 1944 թվի օգոստոս—սեպտեմբեր ամիսներին Ամերիկայի Միացյալ Նահանգների մայրաքաղաք Վաշինգտոնում՝ Դում-

բարտոն-Օքս անունը կրող հին անտից (ամառանոց) մեկում, տեղի ունեցավ ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի կառավարությունների դելեգատների կոնֆերանս: Երբ Վաշինգտոնում երեք խաղաղասեր առաջատար տերությունների դելեգացիաները սկսեցին իրենց աշխատանքը, նրանք անշուշտ գիտակցում էին, որ անհրաժեշտ է խուսափել, խիստ բացասական այն փորձի կրկնությունից, որ ստացվել էր առաջին համաշխարհային պատերազմից հետո կազմակերպված Ազգերի Լիգայի հետևանքով: «Ինչպես հայտնի է այդ անճարակ միջազգային կազմակերպությունը*), որը իբր թե ստեղծվել էր «համընդհանուր խաղաղություն» պահպանելու համար, ոչ մի լուրջ բան չէր ձեռնարկում, ագրեսիայի ամենակոպիտ ակտերը կանխելու կամ ճնշելու համար՝ ո՛չ Իսպանիայում իտալա-գերմանական ինտերվենտների դեմ, ո՛չ Հաբեշստանում՝ իտալական ագրեսիայի դեմ, ո՛չ Եվրոպայում հիտլերյան ագրեսիայի ամբողջ սերիայի դեմ, ո՛չ էլ ագրեսիայի այլ ակտերի դեմ»: («Պրավդա»): Ազգերի Լիգան փաստորեն միշտ էլ

*) Ազգերի Լիգան: Խմբ.



արգելակել է խաղաղասեր ժողովուրդների պայքարը ագրեսիայի դեմ, Լիգան վերջապես իր անխուսափելի պատմությունն ավարտեց մեծագույն ավերիչ պատերազմի փոթորիկի մեջ, որն սկսեց ամենալկտի այն զավթիչը, որին Լիգան ոչ մի կերպ չէր ուզում սանձահարել:

Բնորոշ է, որ ոչ մի լուրջ գործիչ այս պատերազմում չառաջարկեց Լիգայի վերականգնումը, բայց միաժամանակ դա չի նշանակում, որ պետք է հրաժարվել այնպիսի մի կազմակերպություն ստեղծելուց, որի նպատակին է խաղաղասեր բոլոր պետությունների մասնակցությունը միջազգային անվտանգության ապահովման գործին:

Երեք տերությունների դելեգատները, հաշվի առնելով տխրահռչակ Ազգերի Լիգայի դասերը, Դումբարտոն-Օքսի (Վաշինգտոնյան) կոնֆերանսում մշակեցին նախնական առաջարկություններ անվտանգության ընդհանուր միջազգային կազմակերպություն ստեղծելու մասին: Դումբարտոն-Օքսի կոնֆերանսի մասնակից Պրոֆ. Կռիլովի վկայությամբ այդ առաջարկությունները նպատակ ունեն ստեղծել ընդհանուր միջազգային մի այնպիսի

կազմակերպություն, որը պետք է հետապնդի հետևյալ նպատակները՝

ա) կանխել և վերացնել խաղաղությանը սպառնացող վտանգը, բ) ճնշել ագրեսիայի գործողությունները կամ խաղաղության այլ խախտումները, գ) խաղաղ միջոցներով կարգավորել այն գործերը, որոնք կարող են խաղաղությունը խախտել, դ) ազգերի միջև զարգացնել բարեկամական հարաբերություններ, ընդհանուր խաղաղությունն ամրապնդելու համար, ե) ստեղծել միջազգային համագործակցություն՝ միջազգային տնտեսական, սոցիալական և այլ պրոբլեմներ լուծելիս:

Անվտանգության միջազգային կազմակերպության մեջ կարող են մտնել բոլոր խաղաղասեր պետությունները:

1944 թվի հոկտեմբերի 11-ին, ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի կառավարական և կենտրոնական մամուլներում միաժամանակ հրապարակվեցին հատուկ հաղորդագրություններ՝ նվիրված վաշինգտոնյան կոնֆերանսի արդյունքներին:

Ըստ նախատեսվող միջազգային ընդհանուր անվտանգության կազմակերպության կանոնադրության, կազմակերպվում են հետևյալ օրգանները՝ 1. Գլխավոր Ասամբ-



լեյա, 2. Անվտանգության Խորհուրդ, 3. Միջազգային Դատարան, 4. Տնտեսական և Սոցիալական Խորհուրդ, 5. Քարտուղարություն:

Այս օրգաններից յուրաքանչյուրը կատարելու է որոշակի խնդիրներ: Հիմնվելով մամուլում հրապարակված նյութերի վրա կարելի է ասել, որ Գլխավոր Ասամբլեյան կազմված է լինելու կազմակերպությունների բոլոր անդամների ներկայացուցիչներից և պետք է քննի միջազգային խաղաղության ու անվտանգության վերաբերող ամեն մի հարց, հանձնարարականներ պիտի տա այդ հարցերի վերաբերյալ: Սակայն այն բոլոր հարցերը, որոնք պահանջում են, դիմել գործողությունների, հանձնվելու են Անվտանգության Խորհըրդին: Հենց այդ Անվտանգության Խորհրդին է վստահված կրելու միջազգային խաղաղության և անվտանգության գլխավոր պատասխանատվությունը: Նա կարող է ընդունել որոշումներ և ձեռնարկել անհրաժեշտ գործողություններ: Կազմակերպության բոլոր անդամները պարտավոր են համաձայնել Անվտանգության Խորհրդի որոշումներին և կատարել այդ որոշումները: Անվտանգության Խորհուրդը

ծագող վեճերի խաղաղ լուծմանը, ինչպես և խաղաղության սպառնացող վտանգի կամ ագրեսիայի դեպքում պետք է ձեռնարկել անհրաժեշտ գործողություններ: Այդ գործողություններն են. 1) ձեռք առնել միջոցներ, որոնք կապված չեն զինված ուժի գործողությունների հետ, ներառյալ երկաթուղային, ծովային, օդային, փոստային, հեռագրական, ռադիոկապի և հաղորդակցության այլ միջոցների ամբողջական կամ մասնակի խզումը, դիվանագիտական կամ տնտեսական հարաբերությունների խզումը. 2) պետք է կիրառել գործողություններ ագրեսորի դեմ՝ օդային, ծովային կամ ցամաքային զինված ուժերի միջոցով, որի համար կազմակերպության բոլոր անդամները հատուկ համաձայնությամբ տրամադրելու են զինված ուժեր, իսկ ռազմական շտապ միջոցառումների համար պետք է պահի լիակատար պատրաստության վիճակում ազգային ռազմա-օդային ուժերի կոնտինգենտներ: Այդ նպատակով Անվտանգության Խորհրդի տրամադրության տակ լինելու է ռազմական շտաբային կոմիտե: Անվտանգության Խորհրդի կազմի մեջ մտնելու են տասնմեկ պետության ներկայացուցիչներ: Չորս հիմնական պե-



տությունները՝ ՍՍՌՄ-ը՝ ԱՄՆ-ը, Մեծ Բրիտանիան և Չինաստանը, իսկ հետագայում նաև հինգերորդ պետությունը՝ Ֆրանսիան, մշտական տեղեր են ունենալու: Բացի այդ, վեց պետության ներկայացուցիչներ Գլխավոր Ասամբլեայի կողմից ընտրվելու են երկու տարով: Դրանցից երեքը ամեն տարի Ասամբլեայի կազմից դուրս են գալու՝ առանց անհապաղ ընտրվելու իրավունքի և փոխարինվելու են ուրիշներով: Անվտանգության Խորհրդի կազմը պարտավորեցնում է, որ նրա ոչ մի որոշումը չընդունվի առանց հիմնական պետությունների համաձայնության:

Պաշտպանության Պետական Կոմիտեի Նախագահ ընկեր Ստալինը, 1944 թվի իր հոկտեմբերյան զեկուցման մեջ նշեց, որ անվտանգության միջազգային կազմակերպության գործողությունները կլինեն էֆեկտիվ «եթե հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող պատերազմի գլխավոր ծանրությունը իրենց ուսերի վրա կրած մեծ տերությունները այսուհետև էլ գործեն միաբանության և համաձայնության ոգով: Դրանք էֆեկտիվ չեն լինի, եթե խախտվի այդ անհրաժեշտ պայմանը:

Անվտանգության ընդհանուր միջազգային կազմակերպություն. Հաջորդ օրգանը՝ միջազգային դատարանն է։ Միջազգային բոլոր վեճերը քննվում են միջազգային դատարանի կողմից, որին մասնակցում են կազմակերպության բոլոր անդամները։

Տնտեսական և Սոցիալական Խորհրդի խնդիրն է՝ Գլխավոր Ասամբլեայի ղեկավարությամբ լուծել միջազգային տնտեսական, սոցիալական և այլ պրոբլեմները. պահպանել մարդկային իրավունքները և հիմնական ազատության նորմաները. Այդ խորհուրդը կազմված է լինելու 18 պետությունների ներկայացուցիչներից, որոնք ընտրվելու են Գլխավոր Ասամբլեայի կողմից երեք տարով։

Անվտանգության ընդհանուր միջազգային կազմակերպության քարտուղարությունը ղեկավարվելու է գլխավոր քարտուղարը, որը ընտրվելու է Գլխավոր Ասամբլեայի կողմից անվտանգության խորհրդի հանձնարարությամբ։

Դումբարտոն-Օքսի քննած հարցերի լու-



ծումը և ստեղծվելիք միջազգային օրգանի կառուցվածքի մասին հրապարակված նյութերը դեռևս բոլորը չեն։ Այդ կոնֆերանսում երևան եկան նաև մի քանի տարաձայնություններ, բայց դրանք այնքան էլ խոր չեն։ «Բանը տարաձայնությունները չեն, այլ այն, որ տարաձայնությունները դուրս չեն գալիս երեք մեծ տերությունների միասնության շահերի թույլատրած շրջանակից, և, վերջին հաշվով, լուծվում են այդ միասնության շահերի գծով»։ (Ստալին)։ Հիմնականում Վաշինգտոնյան կոնֆերանսի որոշումները պետք է դիտել, որպես հակագերմանական կոալիցիայի ճակատի ամրության վառ ցուցանիշներից մեկը։

Համաշխարհային առաջատար տերությունների միջև համաձայնությունը Թեհրանի կոնֆերանսի պատմական դեկլարացիայում ճանաչվել է որպես հիմք հաստատուն խաղաղության ապահովելու համար։ Այդ դեկլարացիայում երեք խաղաղասեր առաջատար երկրների ղեկավարները հայտարարեցին. «Ինչ վերաբերվում է խաղաղ ժամանակին, ապա մենք համոզված ենք, որ մեր միջև գոյություն ունեցող համաձայնությունը կապահովի հաստատուն խաղաղությունը»։

«Մենք լիովին ընդունում ենք այն բարձր պատասխանատվությունը, որ ընկնում է մեզ և Միավորված բոլոր ազգերի վրա, այնպիսի մի խաղաղություն իրականացնելու համար, որը երկրագնդի ժողովուրդների ճնշող մասսայի հավանությանը կարժանանա և որը կվերացնի պատերազմի աղետներն ու սարսափները շատ սերունդների համար»:

Երեք Տերությունների Թեհրանի Դեկլարացիան պատմական մեծ նշանակություն ունեցող փաստաթուղթ էր, որը դաժան և ավերիչ պատերազմից սասանվող աշխարհին ավետեց մեր հաղթանակի նվիրական ժամի մոտեցումը: Այդ Դեկլարացիան միաժամանակ ժողովուրդների միջև կայուն և երկարատև խաղաղություն ապահովելու նախադուշակն էր: Կոնֆերանսի որոշումները հանդիսանում են Հայրենական մեծ պատերազմից հետո հաստատուն խաղաղություն կազմակերպելու գործում ռեալ և հաջող միջազգային քաղաքականության անկյունաքարը:

Դաշնակից տերությունների և ազատասեր բոլոր ժողովուրդների ընդհանուր ջանքերի կազմակերպման գործում՝ հիտլերյան Գերմանիայի լիակատար և վճռա-



կան ջախջախման համար կարևոր քայլ է հանդիսանում ՍՍՌՄ-ի և Ֆրանսիական Հանրապետության միջև 1944 թվի դեկտեմբերի 10-ին դաշինքի ու փոխադարձ օգնության մասին՝ Մոսկվայում կնքված պայմանագիրը: Սովետա-ֆրանսիական Դաշինքի Պայմանագիրը մի նոր օղակ է հակագերմանական կոալիցիայի հզոր սիստեմում, որը կոչված է ջախջախել թշնամուն և ապահովել ամուր և տևական խաղաղություն: Նա ամրապնդում է Սովետա-ֆրանսիական համագործակցությունը, որն այնքան անհրաժեշտ է Եվրոպայում անվտանգությունը կազմակերպելու համար:

Պայմանագրի 3-րդ հոդվածում ասված է.

«Բարձր Պայմանավորվող Կողմերը պարտավորվում են Գերմանիայի դեմ մղվող այժմյան պատերազմը ավարտելուց հետո և համատեղ ձեռք առնել բոլոր անհրաժեշտ միջոցառումները Գերմանիայի կողմից ծագող ամեն մի նոր սպառնալիք վերացնելու համար և արգելք հանդիսանալ այնպիսի գործողությունների, որոնք հնարավոր կդարձնեին ագրեսիայի ամեն մի նոր փորձ նրա կողմից»:

Հարց է ծագում՝ արդյոք մոտիկ ապագայում նախատեսվող անվտանգության

միջազգային կազմակերպությունը կըս-տեղծվի՞ թե ոչ։

Այս հարցի վճռական և սպառիչ պատասխանը տվել է ընկեր Ստալինը։ «Անվտանգության հարցերի ինը տասներորդը այդ կոնֆերանսում*) լուծվեց լիակատար միաբանության ոգով»։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. Ի. Վ. Ստալին.— Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 26-րդ տարեդարձը— էջ 37—38.

2. Ի. Վ. Ստալին. Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձը—էջ 25—37.

3. Երեք դաշնակից տերությունների՝ Սովետական Միության, Ամերիկայի Միացյալ Նահանգների և Մեծ Բրիտանիայի ղեկավարների կոնֆերանսը Թեհրանում (տես «Ս. Հ.»-ի 1943 թ. դեկտեմբերի 7-ի № 248 (6976)։

4. **И. Тайгин**. Проблема защиты мира и международной безопасности («Большевик» № 21. ст. 33—44).

5. Проблема защиты мира и международной безопасности («Война и рабочий класс» № 20, передовая).

*) Դումբարտոն-Օքս։ Խմբ.



6. Проф. **С. Крылов**. О всеобщей международной организации безопасности («Боец РККА» от 3-го декабря 1944 г. № 286 (7930) стр. 3).

7. Контуры международной организации безопасности (Передовая «Правды» от 11 октября 1944 г.).

8. Сообщение о результатах предварительных переговоров делегаций Правительств СССР, США и Соединенного Королевства в Вашингтоне по вопросу о создании международной организации безопасности («Правда» от 11 октября 1944 г. ст. 3).

9. Պայմանագիր Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության և Ֆրանսիական Ռեսպուբլիկայի միջև դաշինքի ու փոխադարձ օգնության մասին։ (Տես՝ «Ս. Հ.» № 251(7244))

10. Կարևոր քայլ Սովետա-Ֆրանսիական Հարաբերությունների զարգացման մեջ «Պրավդայի» դեկտեմբերի 18-ի առաջնորդողը։ (Տես՝ «Ս. Հ.» № 251 (7244)։

11. Անգլո-Սովետա-Ամերիկյան կոմյունիկե երեք մինիստրների Մոսկվայում տեղի

ունեցած խորհրդակցության մասին։ (Տես «Ս. Հ.»-ի 1943 թվի նոյեմբերի 2-ի № 224 (6952)։

12. Ընդհանուր անվտանգության հարցի առթիվ չորս պետությունների դեկլարացիան։ («Ս. Հ.»-ի նույն համարում)։

13. Դեկլարացիա Իտալիայի մասին։ («Ս. Հ.»-ի նույն համարում)։

14. Դեկլարացիա Ավստրիայի մասին։ («Ս. Հ.»-ի նույն համարում)։

15. Դեկլարացիա կատարված գազանությունների համար հիտլերականների պատասխանատվության մասին։ («Ս. Հ.»-ի նույն համարում)։

16. Կարևոր ավանդ դաշնակիցների ընդհանուր գործում։ («Պրավդայի» նոյեմբերի 3-ի առաջնորդողը. տես՝ «Ս. Հ.»-ի 1943 թվի նոյեմբերի 3-ի № 225 (6953)։

17. Պատմական որոշում («Իզվեստիայի» դեկտեմբերի 7-ի առաջնորդողը. տես «Ս. Հ.»-ի 1943 թվի դեկտեմբերի 8-ի № 249 (6977)։

---





Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

ՎՖ 00268 Պատ. 1246, տիրաժ 5000

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից Գրքերի և ամսագրերի տպարան, Երևան